ռելի քան 25 քիլոմեթր հեռու, գործադուլը կարգ մը առաւելութիւններ կը տանի։

Հրամանագիրը յետոյ կը նախատեսէ զանազան միջոցներ, արհեստագիտական դասընթացքներ հաստատելու, վարժ բանուորները աստիճանաբար յառաջ քշելու եւ՝ անոնց տեղ գործաւորներ վարձելու եւն. համար.

## Կրաւորական պաշտպանութեան դասեր դպրոցներու մէջ

Կիրակի օր հրատարակուած հրամանագիրներէն մին պարտաւորիչ կը հռչակէ կրաւորական պաշտպանութեան դասերը բոլոր դպրոցներուն մէջ. հանրային թէ մասնաւոր։ Ուսուցումը պիտի բաղկանայ տարեկան 12 ժամէ։ Համաձայն հրամանագրին կցուած ցուցակներու, որոնք ուսուցման մանրամասնութիւնները կը սահմանեն, մանկապարտէզներէն եւ տարրական դպրոցներէն մինչեւ բարձրագոյն կրթարանները։

Կառավարութիւնը անհրաժեշտ գտած է այս դասաւանդութիւնը, որպէսզի նոր սերունդը կարենայ պաշտպանուիլ օդային կազերու, ռումբերու եւ ուրիշ վտանգներու դէմ։

## Ազգ. վիճակահանութեան պարգեւները

Ազգ. պարգեւախաղի 7րդ շարքին վիճակահանութիւնը տեղի ունեցաւ շաբաթ գիշեր։ Հինգ միլիոնի մեծ պարգեւը շահեցաւ 312,452 թիւը։

Հետեւեալ չորս թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 1 միլիոն ֆրանք. — 873,528 326,627 147,940 1,026,877։

Հետեւեալ վեց թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 500,000 ֆրանք. — 337022 256302 888811 1150519 046245 245080.

Հետեւեալ վեց թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 200 հազար ֆրանք. — 657345 262454 998106 1314383 1246630 338179։

Հետեւեալ վեց թիւերէն իւրաքանչիւրը շահեցաւ 100 հազար ֆրանք. 14063 17034 10358 24054 61825 59573։

81952 51405 56181 51281 34053 եւ 94870 վերջացող թիւերը շահեցան 50 հազար ֆրանք։

9532 2914 1927 7523 8785 8466 վերջացող թիւերը շահեցան 20 հազար ֆր.։

208 վերջացող թիւերը շահեցան 10000 ֆրանք։

801 վերջացող թիւերը շահեցան 5000 ֆրանք։

980 վերջացող թիւերը շահեցան 2000 ֆրանք։

39 վերջացող թիւերը շահեցան 220 ֆրանք։

2 վերջացող թիւերը շահեցան 110 ֆրանք։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Պ. ՏԱԼԱՏԻԷ մօտերս հատոր մը պիտի հրատարակէ, ամփոփելով իր 13 ամսուան վարչապետութեան ընթացքին խօսած ճառերը։ Այս առթիւ յառաջաբանին մէջ պիտի բացատրէ թէ Ֆրանսայի քաղաքականութիւնը կը մնայ անփոփոխ։ «Վաղը, ինչպէս երէկ, մենք պիտի ջանանք յաղթահարել մեզի սպառնացող վտանգները, ապահովելով մարդկութեան եւ Ֆրանսայի ազատութիւնը եւ արժանապատուութիւնը։ Ճակատագիրը կախում ունի մեր վճռականութենէն, որ պէտք է մնայ միշտ արթուն եւ անվհատ»։

ԵՈՒՆԱՍՏԱՆԻ կառավարութիւնը դրօշի տակ հրաւիրեց կարգ մը օդանաւային սպաներ եւ ենթասպաներ, 60 օրուան մարզանքի մը համար։ Աթէնքի թերթերը կը հրատարակեն նաեւ ուրիշ հրամագիր մը, որուն համաձայն դրօշի տակ առնուած են 1932 - 1937ի դասերուն մասնագէտ հեռագրիչները կարգ մը շրջաններու, մանաւորապէս հիւսիսային գաւառներու եւ կղզիներու մէջ։

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ ՄԷՋ պատակարգ ցոյցեր կատարուեցան Ս. Գէորգի տօնին առթիւ, որ յաղթանակի եւ քաջութեան պատուանշանի տօնն է։ Սոֆիայի մէջ թագաւորը աչքէ անցուց պահակազօրքը։ Արարողութիւնը տեւեց քանի մը ժամ։ Զօրահանդէսէն վերջը սպաները եւ ժողովուրդը հնչեցուցին Տոպրուճայի քայլերգը, որ խորհրդանշանն է Պուլկարիոյ պահանջներուն։ Պատերազմական նախարարը ճառ մը խօսելով ըսաւ թէ պետութեանց քարտէսէն կը ջնջուին միայն այն երկիրները որ պատրաստ չեն պաշտպանելու իրենց ազատութիւնը։ «Ձի մեռնիր ժողովուրդ մը որ պատրաստ է ինքզինքը պաշտպանելու եւ մեռնելու»։

ԶՕՐ. ՎԷԿԱՆ փայլուն ընդունելութեան մը արժանացաւ Պուքրէշի մէջ, ուր գացած էր Անգարայէն։ Մարաջախտ Ֆօշի երբեմնի գործակիցը, որ բացարձակապէս գաղտնի կը պահէ իր քաղած տեղեկութիւնները, ջերմապէս կը գնահատէ Ռումանիոյ վերաբերումը, «որ ձեռնարկած է ամբողջովին կերպարանափոխելու երկիրը, հետեւողութեամբ Թուրքիոյ։ Լաւ կազմակերպուած բանակ մը ստեղծուած է, եւ կ'աշխատի բարելաւել արտադրութիւնը»։ Զօրավարը Փարիզ վերադարձաւ, լրացուցած ըլլալով իր առաքելութիւնը։

ԳԵՐԼԻՆԻ պապական նուիրակը երկար տեսակցութիւն մը ունեցաւ Հիթլէրի հետ։ Կը կարծուի թէ Վատիկան ալ կ'աշխատի ելք մը գտնել, խաղաղութեամբ լուծելու համար Տանցիկի խնդիրը։

ՃԱՓՈՆԻ զինուորական իշխանութիւնը երկար զեկոյց մը հրատարակեց, որ «ժամանակավրէպ» կոչելով օտար դեսպանութեանց գոյութիւնը Փէքինի մէջ, կ'արդարացնէ թէ օտար թաղամասերը «հակաճափոնական քարոզութեան գործօն բոյներ են» եւ եթէ չփոխեն իրենց ընթացքը, ճափոն անհրաժեշտ միջոցները ձեռք պիտի առնէ, բարեկարգութիւնը եւ խաղաղութիւնը պահպանելու համար։ — Միեւնոյն առեն պաշարման վիճակ հրատարակուեցաւ Թանթոնի շրջանին մէջ։

ՓԱՐԻԶԻ խորհրդային դեսպանատան նախորդ խորհրդականը, Հերշֆէլտ, որ Մոսկուա կանչուած էր եւ «ժուռնալ դը Մոսկուի» մէջ կ'աշխատէր, ձերբակալուած է, համաձայն Մոսկուայէն հասած հեռագրի մը։ Թերթն ալ դադրած է։

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ մարտանաւեր խարիսխ նետեցին Սպանիոյ հինգ նաւահանգիստներուն առջեւ, մասնակցելու համար ի պատիւ Զօր. Ֆրանքոյի սարքուած հանդէսներուն։

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## HAYASTAN

ԱՄՍԱԳՐԻ ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒԸ (ԹԻՒ 4), ԱՄԲՈՂՋՈՎԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ, ՃՈԽ ԵՒ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ։

(Տասը նկարներ մասսայական ջարդերու եւ խորհրդանշան մը՝ կողքին վրայ)։

Գլխաւոր յօդուածներէն զատ, այս թիւը կը պարունակէ քանի մը նահատակներու վերջին խօսքերը, ՀԱՅԵՐԷՆ։

Բովանդակութիւն — ԽՄԲ.՝ Դասեր մեր անցեալէն. ՌՈՒԲԼԻՆԵԱՆ՝ Ոճիրին եւ կեանքին խաղը. A.՝ Երանի՜ թէ անոնց զոհողութիւնը զուր չանցնի. ՀԱՄԱՌՕՏ ԱԿՆԱՐԿ՝ 1915ի դէպքերուն մասին. ՆՈՒՊԱՐ ՆԻԿՈՂՈՍԵԱՆ՝ Ապրիլ 1915. ԲՕԼ ՏԷՇԱՆԷԼԻ եւ ԲՕԼ ՓԷՆԼԸՎԷԻ ճառերը. Դ. ՎԱՐՈՒԺԱՆ՝ Հայրենի լեռներ. ՑԻՌԱՄՍՆԹԸ Ես երգելով կ'ուզեմ մեռնիլ. Դասընթացք հայերէն լեզուի. Նահատակներու յուշարձանը. Ն. ՄՈՐԴՈՐԵԱՆ Եղեռնին. եւլն. եւլն.։

Տարեկան բաժնեգին՝ Ֆրանսա եւ գաղութներ՝ 25 ֆրանք, Արտասահման 1 տոլար, ձեռքէ հատը 2·50 ֆրանք։

Փնտռել բոլոր այն կրպակներուն մէջ, ուր ՅԱՌԱՋ կը ծախուի։

Խմբագրական հասցէ.— Armik Djamalian, 5, Villa Virginie, Paris (14e)

Վարչական հասցէ.— H. Keusséyan, 51, Rue du Caire, Paris (2e)







ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Վ. ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆԻ

## ԱՇԽԱՐՀԻ ՆՈՐ ԲԱԺԱՆՈՒՄԸ

(Միւնիխի առիթով)

»»» · «««

Ընտիր թուղթ, մաքուր տպագրութիւն, էջ 323 (չորս քարտէսներով) տպ. «Յուսաբեր» 1939։ Գին 30 ֆրանք։ Արդիւնքը պիտի յատկացուի Հ. Յ. Դ. Թանգարանին։ Փարիզի մէջ դիմել ընկեր Լ. Գեւոնեանի «Յառաջ»ի խմբագրատունը, գաւառներու մէջ տեղական մարմիններուն։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԱՏՈՒԱԾԱՐԵԱԼ ՔԱՂԱՔ

(ՆՇԽԱՐՆԵՐ ԱՏԱՓԱԶԱՐԷՆ)

ԳՐԵՑ՝ ՎԱՐԴԱՆ ԵՂԻՇԷԵԱՆ

Ստուար հատոր մը 256 էջ։ Գին 15 ֆրանք, արտասահման 20 ֆրանք, Ամերիկա՝ 75 սէնթ։ Ստանալու համար դիմել՝ H. AGONAYAN

10, Sente des Economes, Romainville (Seine), France



Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme .. Paris (13)

րուն տպաւորութիւնը։ Կը կարծուի սակայն, թէ Խ. կառավարութիւնը դրական պատասխան պիտի տայ այս առաջարկներուն։

*** «Տէյլի Մէյլ» կը գրէ թէ Գերմանիա նոր խաղեր կը փորձէ, խափանելու համար Թուրքիոյ եւ Խ. Միութեան միացումը արեւմտեան պետութեանց զինակցութեան։ Կ՚ըսուի թէ Գերմանիա լայն վարկեր առաջարկած է Մոսկուայի, ամէն տեսակ ապրանքներ ճարելու համար, բայց խորհրդային կառավարութիւնը մերժած է։

Լոնտոնի մէջ անհամբեր կը սպասեն Մոսկուայի վերջնական պատասխանին։

*** Տիկին Ժընըվիէվ Թապուի քաղած տեղեկութեանց համաձայն, Հիթլեր տհաճութիւն յայտնած է Ֆոն Փափէնի ձախողութեան համար, իսկ այս վերջինը պատասխանած է թէ իր պաշտօնը դժուարացած էր, որովհետեւ սպայակոյտին եւ գաղտնի ոստիկանութեան (Կէսթափօ) գործակալները ծախսեր քարոզութիւններ կատարած էին Պոլսոյ եւ Անգարայի մէջ, իր ժամանումէն առաջ։ Թուրքիոյ վարիչ շրջանակներուն ուշադրութիւնը գրաւած էր գերման զինուորական մարզիչներու տարօրինակ աշխատանքը։ Միւս կողմէ, Անգարա մինչ աչքի առջեւ ունէր իտալական սպառնալիքը դէպ ի Փոքր Ասիա, Ցունաստանի ճամբով եւ Տրկոտասան կղզիներէն։

Իտալական մամուլը կը շարունակէ ոյժեր ուղղել Թուրքիոյ եւ Ֆրանսայի դէմ, ծրագրուած համաձայնութեան եւ Սանճաքի հարցին առթիւ։ Այս առթիւ կ՚ազդարարեն թէ Առանցքը իր կարգին միջոցներ ձեռք պիտի առնէ, երբ ստորագրուի անգլօ-խորհրդային համաձայնութիւնը։

Նոյն աղբիւրին համաձայն, Իտալիա եւ Գերմանիա կը շարունակեն ճնշել Եուկոսլաւիոյ եւ Պուլկարիոյ վրայ։ Կոմս Չիանօ խոստացեր է Պուլկարիոյ միացնել ոչ միայն հարաւային Տոպրուճան, այլ եւ սերպիական եւ յունական Մակեդոնիոյ մէկ մեծ մասը, ինչպէս եւ դէպ ի ծով ելք՝ Տէտէ Աղաճով։

*** Փ. Վ. Կայտա, Մուսոլինիի թարգմանը, շօշափելով «կենսական տարածութեան» խնդիրը, կ՚ազդարարէ.

— «Նոր տարածութեանց խնդիրը կենսական է Իտալիոյ եւ Գերմանիոյ համար։ Ահա թէ ինչո՛ւ անոնք դարձած են այն ազգերուն դէմ որոնք արդէն ունին ոչ միայն կենսական, այլ եւ աւելորդ տարածութիւններ։ Անգլիա եւ Ֆրանսա մերժելով գործակցութիւնը, կ՚ուզեն յարուցանել պատերազմ մը որ պատմութեան մէջ պիտի կոչուի ճակատագրական պայթումը ազգերու դասակարգային պայքարին»։

Եզրակացութիւն,— ժողովրդավար պետութիւնները պէտք է Իտալիոյ եւ Գերմանիոյ տան «աւելորդը»։

## Ճափոնական սպառնալիք մը

Ճափոնական կարեւոր թերթ մը իր վերջին խմբագրականով կ՚ազդարարէ թէ Ճափոն փոխադարձաբար միջոցներ ձեռք պիտի առնէ Անգլիոյ եւ Խ. Միութեան դէմ, եթէ ծրագրուած անգլօ-խորհրդային դաշինքը վնասէ ճափոնական շահերուն, Ծայր. Արեւելքի մէջ։ Կը նշանակէ թէ Ճափոն ի հարկին պիտի միանայ իտալօ-գերման զինակցութեան։

*** Չինական ինը նաւահանգիստներ փակուեցան օտար նաւերու առջեւ, ճափոնական իշխանութեանց կողմէ։

*** Պաշտօնական տեղեկագրի մը համաձայն, պատերազմին սկիզբէն մինչեւ ապրիլ սպաննուած են 936,345 Չինացիներ։ Երկու միլիոն 300 հազար Չինացիներ կուսելու անկարողութեան մատնուած են։ Ճափոն գրաւած է 1,562,938 քառ. քիլոմեթր տարածութիւն, այսինքն ճափոնական կայսրութեան երկնապատիկը, բուն Չինաստանի 50 առ հարիւրը, իսկ բովանդակ Չինաստանի 16 առ հարիւրը։ Ճափոն գրաւած է նաեւ 215,000 հրացան, 8360 թնթեւ եւ 3346 ծանր գնդացիր, 815 դաշտային թնդանօթ եւն.։

### ՉԱՆԱՉԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԼԵՀԱՍՏԱՆ որոշեց 50 առ հարիւր պակսեցնել իր արտածումները դէպի Գերմանիա, յառաջիկայ երեք ամիսներու ընթացքին։ Մինչեւ հիմա արտածումներու գումարը կը հասնէր ամսական մէկ միլիոն ոսկիի։ Այս որոշումն ալ հետեւանք է Տանցիկի վէճին։ Լեհաստան հարկադրուած է խստօրէն կրճատել հանքածուխի, ուտելիքի եւն. արտածումները։ Գերմանիան ալ իր կարգին գրեթէ դադրեցուցած է ամիսներ առաջ ապսպրուած մեքենաներու եւ սպառազինութեանց յանձնումը. այնպէս որ Լեհաստան ստիպուած է ապսպրանք տալ Անգլիոյ, Ֆրանսայի եւ Պելճիոյ մէջ։

ԱՄՆԱՏԱՆՔԻ Դաշնակցութեան ընդհ. քարտուղար Լէոն Ժուհօ խոստովանեցաւ թէ 1936էն ի վեր անդամներու թիւը պակսած է 20 առ հարիւր համեմատութեամբ,— մէկ միլիոն հոգի։

ՊԱՂԵՍՏԻՆԻ անգլ. զօրքն ու ոստիկանութիւնը ոչնչացուցին արաբական հրոսախումբ մը, Թուլկարէմի մէջ։ Սպաննուեցան երեք հոգի։

ՄՈՒՍՈԼԻՆԻ ունկնդրութեան ընդունեց Գերմանիոյ օդային պատուիրակութեան նախագահը, որ այժմ Հռոմ կը գտնուի։ Իտալական շրջանակներու մէջ կ՚ըսուի, թէ այս այցելութեան նպատակն է մշակել գործակցութեան այնպիսի ծրագիր մը, որով հնարաւոր ըլլայ միացեալ հրամանատարութեամբ արագ հարուածներ իջեցնել թշնամիին, եթէ պատերազմ ծագի։

ՍՊԱՆԻՈՅ իտալացի զինուորները կը շարունակեն մեկնիլ Սպանիայէն։ Սպանիական կառավարութիւնը զէնքի տակ կանչեց 29 տարեկան զինուորցուները, ընդամէնը 300,000 հոգի։ Սպանիական բանակի թիւը այժմ 700,000 է։

ՓՐՈՖ. ԱԵՆՇԹԱՅՆ Նիւ-Եորքի մէջ ձայնասփիւռ ճառ մը խօսելով, յորդորեց որ Հրեաները համբերատար ըլլան եւ Անգլիոյ դէմ թշնամական քայլեր չառնեն։ «Մինչդեռ թէ Անգլիոյ թշնամիները մեր ալ ոխերիմ թշնամիներն են։ Հակառակ բոլոր յուսախաբութեանց՝ մեզի համար կենսական է որ պահպանուին Անգլիոյ դիրքը եւ ազդեցութիւնը»։

ՀՈԼԱՆՏԱԿԱՆ կառավարութիւնը օրինագիծ մը ներկայացուց խորհրդարանին, որով կ՚առաջարկէ շինել 3—4 մեծ մարտանաւ, 25—30,000 թոն տարողութեամբ։

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ երկու ռումբեր պայթեցան սինէմայի մը մէջ, սպաննելով չորս հոգի եւ վիրաւորելով բազմաթիւ հանդիսականներ։ Զոհերը մեծ մասով Արաբներ են։ Խուզարկութեան ատեն երրորդ ռումբ մըն ալ գտնուեցաւ։ Հայֆայի մօտ սպաննուեցան գիւղացի մը եւ չորս կիներ։ Ուրիշ չորս կիներ եւ տղայ մըն ալ վիրաւորուեցան։

ԲՈԼՈՐՈՎԻՆ ՄԵՐԿ մարդ մը առջի օր Քոլէժ Սթանիսլասի մէկ դասարանը մտնելով, ամպիոն բարձրացաւ եւ սկսաւ դաս տալ... պարապ նստարաններուն եւ զինուորական եղանակներ երգել։ Ծառաները ձայնէն արթննալով, անմիջապէս դասարան մտան եւ ափ ի բերան մնացին։ Ոստիկանները հազան միասին բռնելով ծածկոց մը, եւ ուղղակի պահականոց առաջնորդեցին այս նորօրինակ Ադամը, որ խմած — խմած եւ քաղաքը ծախած էր, Հոգեգալուստի առթիւ։

ԾԵՐԱՒՈՒՏԱԿԱՆ ԺԻՒՍԹԷՆ ԿՈՏԱՌ Պոլիս հասած ըլլալով, հրաւիրուեցաւ կարգ մը դասախօսութիւններ կատարել համալսարանին մէջ, Իլիրդէի մասին։

## Կարմիր Խաչի Աւրորա ընկերային Մ. Ֆինի ...



Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme . . Paris (13)